# ԼՈՅԷ՛ ՄԱՆՈՒԿ ՅԻՍՈՒՍ

Մանո՛ւկ Յիսուս.

Կ'ուզենք հաւատալ եւ պէտք ունինք հաւատալու որ Երկնաւոր Հայրդ Քեզ ղրկեց մեր մէջ, որպէսզի անգամ մըն ալ փորձես մեր հողեղէն մարմինը լեցնել աստուածային այն շունչով, զոր առաջին մարդը մերժեց ընդունիլ Եդեմի մէջ :

Կ'ուզենք հաւատալ, բայց դեռ չենք հասկնար որ ի՛նչ անսահման լաւատեսութեամբ մը՝ երկնաւոր հայրդ իր ստեղծագործած բիւրաւոր աշխարհներէն սա մեր երկրագունտը ընտրեց իբրեւ օթեւան Քու երկնաշնորհ լինելութեանդ :

Ու Դուն ծնար, յայտնեցար, քարոզեցիր, տառապեցար եւ խաչուեցար, որպէսզի փարատի մեր հոգիները պարուրող խաւարը եւ աստուածային լոյսը իջնէ մեր մէջ: Բայց մահէդ քսան դար ետք դեռ խաւարը կը մնայ անլոյծ, իր մէջ միշտ խեղդելով վերջին հետքերն իսկ Լոյսին, զոր հազիւ թէ կրցանք փոխանցել սերունդէ սերունդ տարբեր անունով մը. Յոյս:

Կը տեսնենք այսօր որ մեր երկրագունտը արժանի չէր այդ Շնորհին ու պեղելով մեր սիրտն ու հոգին ի զուր կը փնտռենք անկիւն մը՝ հոն պահելու համար Յոյսի վերջին նշոյլը, զոր անէացնելու համար ոչ մէկ ջանք խնայեցին մեր աշխարհի բոլոր զօրաւորները :

Կը հաստատենք նաեւ որ տկարներուն, անբախտներուն, անժառանգներուն եւ տառապեալներուն սրտերէն ներս իսկ հազիւ համեստ անկիւն մը երբեմն կը պլպլայ տակաւին այդ Նշոյլը :

Մանո՛ւկ Յիսուս.

Գիտե՞ս սակայն որ այս երկրագունտին վրայ, կ'ապրի ժողովուրդ մը, որ Քեզ ճանչցած օրերէն ի վեր չի դադրիր իր սրտին մէջ հրահրելէ Յոյսի այդ նշոյլը:

Գիտե՞ս արդեօք որ այդ ժողովուրդը, որ Քու խաչելութիւնդ կը վերապրի ամէն օր, դեռ կը յուսայ առ Քեզ, դեռ կը հաւատայ Ծննդեանդ խնկական Խորհուրդին: Կը յուսայ իր բովանդակ միամտութեամբ, կը հաւատայ իր բովանդակ անկեղծութեամբ :

Այդ ժողովուրդը փոքր է թիւով, բայց փոքր չէ սրտով ու հոգիով :

Իր ձայնը զօրաւոր չէ այնքան, որ դիւրաւ ճեղքէ փարիսեցիներու աղօթքներով, անէծքներով ու սպառնալիքներով թանձրացած մթնոլորտը, բայց անկեղծ, ներդաշնակ ու խոնարհ է, եւ արժանի է լսուելու Խոնարհներու Աստուածի մը կողմէ :

Լոյէ՛ Մանուկ Յիսուս. խոնարհեցո՛ ունկն քո առ մեզ եւ լսէ՛, քանի ուշ չէ:

Այս գիշեր, երբ աշխարհ գաս, գիտցի՛ր որ ո՛չ մէկ ճոխ ու փարթամ ժողովուրդ կրնայ Քեզի ընծայել այն արժանաւոր օթեւանը, զոր չարչարեալ, բիւրիցս խաչեալ հայ ժողովուրդը պատրաստ է ընծայելու իր սրտին մէջ :

Ժ. ԱՐԴԱՐԵԱՆ

# Ի՞ՆՉՊԷՍ ԿԸ ՏՕՆՈՒԻ ԾՆՈՒՆԴԸ ԱՇԽԱՐՀԻ ՄԷՋ

## ԱՆԳԼԻԱԿԱՆ ԾՆՈՒՆԴ

Ծնունդը գերազանցապէս ընտանեկան տօն մըն է Անգլիոյ մէջ: Այս պատճառով, անգլիական գրականութեան մէջ որոշ տեղ մը կը գրաւէ, — զայն երգած են մեծ ու պզտիկ բոլոր անգլիացի բանաստեղծները :

Զարմանալի է որ, քրիստոնէական կանոններու հաստատումէն շատ առաջ Անգլիացիները կը տօնէին ծնունդը: Ը. դարուն Անգլիացիները նոր տարին կը սկսէին Դեկտեմբեր 25ին: Անոնք այդ օրը իրենց լեզուով կը կոչէին «մատհըրս նայթ» (մայրերու գիշերը) :

Ամէն տարի «Ծնունդի պատմութիւններ» կ'ողողեն տուներն ու վաճառատուները: Մեծն Բրիտանիոյ ժողովուրդը, մեծ թէ փոքր, մէկ քանի օրուան ընթացքին կը սպառէ այդ բոլոր գիրքերը: Շէյքըփիր, Պէն Ճօնսըն, Միլթըն, Թէքրի, Էնտրիու, Լոնկ, Ռոպըրթ Սաութէյ եւ նման մեծ բանաստեղծներ, ինչպէս նաեւ Տիքընսի նման մեծ վիպասաններ աւելի կամ նուազ չափով շունչ եւ մելան սպառած են Ծնունդի վրայ :

Թատրոնն անգամ ազդուած է այս ընդհանուր շարժումէն, ծաղկեցնելով ծնունդի վերաբերեալ փիէսներ :

## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԾՆՈՒՆԴ

Ծնունդը մասնաւորաբար գերմանական ցեղերուն տօնն է: Դեկտեմբեր 24ի գիշերը, փողոցները կը պարպուին, թատրոնները եւ սինէմաները կը փակուին, որովհետեւ ամէն մարդ, հարուստ թէ աղքատ, կը փութայ իր տունը՝ հաւաքուելու համար Ծնունդի ծառին շուրջ: Այնտեղ են ընտանիքին բոլոր անդամներն ու բարեկամները: Գերմանացիին համար սովորութիւն է հրաւիրել ամուրին կամ պանդուխտը: Նուէրներ կը փոխանակուին : Կ'ուտեն նշանաւոր «մարցիփան»ը եւ պտուղներ, յետոյ խմբովին կ'երգեն Ծնունդի երգերը, «Վայնախթսլիտըր», որոնց գլխաւորներն են. — «Հանդարտ գիշեր, սուրբ գիշեր» եւ «Եղեւին, ո՛վ եղեւին, որքան կանաչ են տերեւներդ »:

Գերման ցեղը մասնաւոր երկիւղածութիւն մը ցոյց կուտան Ծնունդին հանդէպ, որ ազդած է բոլոր գերման գրողներուն վրայ: Կէօթէ, Հայնէ, Կէրհարտ, Հաուփթման երգած են գերմանական Ծնունդը: Գերմանները բազմաթիւ գրոյցներ եւ առասպելներ ունին Ծնունդի մասին : Կարելի է ըսել թէ մանուկներու յատուկ Ծնունդի գրականութեան մրցանիշը Գերմաններուն ձեռքը կը գտնուի :

## ՖՐԱՆՍԱԿԱՆ ԾՆՈՒՆԴԸ

Ֆրանսայի գիւղերուն մէջ հովիւները նուէր կը հաւաքին եւ խթումի գիշերը կը թափեն Մանուկ Արքային առջեւ: Անոնք որ նուէր կուտան, Դրախտին մէջ տեղ մը շահած կ'ըլլան, — ընդհանրապէս բրդեղէն, ալիւր, իւղ, գինի եւ պտուղներ : Գիւղերուն մէջ թափօրներ կը կազմուին, փառաբանելու համար հրեշտակները, կոյսը, Սուրբ Յովսէփը եւ Յիսուս Մանուկը :

Ծնունդի օրը, յետին աղքատը իր «Ծնունդի ծառ»ն ունի, որ կը խորհրդանշէ բնութեան զարթօնքը ձմրան թմրութենէն ետք: Կարգ մը շրջաններու մէջ, «Ծնունդի ծառ»ը կը պահուի մինչեւ Յունուարի վերջը: Սթրազպուրկի մէջ «Ծնունդի ծառ»ի մասին յատկանշական առասպել մը կը պատմուի. — Փոքր տղեկ մը անտառէն երկու ծառ կը կտրէ զանոնք ծախելու եւ քիչ մը դրամ ձեռք ձգելու համար: Առաջին անձը, որուն կը դիմէ... անտառապահ մըն է: Մարդը սակայն կը մեղքնայ եւ մէկ ոսկիի կը գնէ ծառերը: Յետոյ կը նետէ պարտէզին մէկ անկիւնը: Տունին տղաքը սակայն, ծառերը կ'առնեն եւ կը տնկեն եկեղեցիին բակը: Պատարագէն ետքը, երբ ժողովուրդը դուրս կ'ելլէ եկեղեցիէն, զարմանքով կը տեսնեն որ զանգակատունին չափ երկար երկու ծառեր աճած են: ԺԸ. դարուն, Սթրազպուրկի մէջ «գթութեան ծառեր» կը կոչէին այդ երկու ծառերը :

## ԻՏԱԼԱԿԱՆ ԾՆՈՒՆԴ

Ծնունդի հին աւանդութիւնները հետզհետէ կը կորսուին այս երկրին մէջ: Շատ հազուադէպ է տեսնել յաղթանդամ եւ զուարթերես գիւղացիներ, որոնք քաղաք կը թափէին եւ դուռնէ դուռ կը շրջէին, դեղջկական նուագներ ածելով : Այլեւս կարելի չէ հանդիպիլ սրածայր գլխարկով եւ երկար մազերով, ոչխարի կաշիէ հագուստներ հագած հովիւներուն կամ լսել անոնց տիկերուն քաղցրալուր ձայնը:

Հակառակ այս բոլորին, Նափոլիցիները երախայի պէս կը սպասեն Ծնունդին: Քաղաքը արտասովոր երեւոյթ մը կը ստանայ եւ օտար մը այն տպաւորութիւնը կը կրէ թէ փոքրերէն աւելի մեծերը կը հրճուին այդ օրը: Եկեղեցիներուն մէջ մասնաւոր բեմեր կը յարդարուին, ուր կը ներկայացուի Աստուածային Մանուկը՝ իր մսուրին մէջ պառկած եւ ձեռքը երկարած աստղին, մոգերուն եւ գանձերուն :

Վենետիկի մէջ ալ Ծնունդը մասնաւոր շուքով կը տօնուի. մանաւանդ գիշերը արտասովոր տեսարան մը կը ստանայ քաղաքը: Վենետիկցիները այն համոզումը ունին թէ Խթումի գիշերը բժշկութեան գիշերն է: Կէս գիշերին արտասանուած կարգ մը խորհրդաւոր բառեր կը բժշկեն տղոց ամէն տեսակ հիւանդութիւններ :

## ՍՊԱՆԱԿԱՆ ԾՆՈՒՆԴ

Եւրոպայի ոեւէ ժողովուրդէ աւելի Սպանացիներն են որ կապուած են կրօնական աւանդութիւններուն: Այս տեսակէտով, Ծնունդի տօնը բացառիկ կարեւորութիւն մը կը ստանայ երկրին մէջ :

Գաղափար մը տալու համար թէ որքան խոր հետք ձգած է կրօնքը սպանական գրականութեան վրայ, Ծննդեան տօնին նուիրուած կտոր մը ահաւասիկ . —

«Այս իրիկուն, երբ ամէն ինչ հանդարտ էր, մեր հոգիները լուսաւորելու համար՝ ծնաւ պայծառ աստղը, Յակոբի պայծառ աստղը: Կոյս մը ծնաւ: Տասնըհինգ տարու կոյս մը, գեղեցիկ սիրուն կոյս մը, գեղեցիկ սիրունիկ, չի գտնուիր հարիւր հատի մէջ:

«Երբեք այս տեսակ հրաշք չէր պատահած, երբեք պիտի չպատահի :

«Կոյսը ուզեց նստիլ ձիթենիի մը շուքին տակ, տերեւները վեր դարձան տեսնելով նորածինը: Երեք մոգերը ճամբայ ելան, առաջնորդուած աստղէ մը, հասան մինչեւ մսուրը, եւ տեսան նորածինը : Երեքն ալ նուէր տուին ,

«Ես աղքատ եմ բան մը չունիմ, սիրտըս կը բերեմ անոր »:

## ՌՈՒՄԱՆԱԿԱՆ ԾՆՈՒՆԴ

Ամէնէն աւելի Ծնունդին է որ, յայտնի կ'ըլլայ թէ Ռումանացին որքան կապուած է իր աւանդութիւններուն :

Տղաքը օրեր առաջ պատրաստութիւններ կը տեսնեն, եւ Ծնունդին առտուն, կանուխ, խումբեր կազմելով փողոց կ'ելլեն, դռնէ դուռ կը շրջին պոռալով — «Բարիլոյս Ծնունդ. Ծնունդը եկաւ, մեզի ի՞նչ պիտի տաք»:

Տան տէրը դուռը կը բանայ, զանոնք տաքուկ սենեակը կը կանչէ : Տղաքը Քրիստոսի ծննդեան մասին ժողովրդական ոտանաւորներ կ'արտասանեն :

Տանտէրը կը լեցնէ անոնց տոպրակները: Երբեմն ուտելիքի տեղ դրամ կը տրուի անոնց :

Իրիկունը, փողոցներուն մէջ «աստղ»ի տեսարանը կը ներկայացուի: Շաբաթներ առաջ խոշոր աստղի ձեւով կտաւ մը կը պատրաստեն, վրան կրօնական նկարներ գծուած: Աստղին մէջտեղը լապտեր մը կը վառեն, եւ այսպէսով իրական աստղի մը պատրանքը կը տրուի հեռուէն: Այս առթիւ թուղթէ հագուստներ հագած տղաք, որոնք փայտէ թուրեր բռնած են, կը ներկայացնեն մոգերուն գալուստն ու երկրպագութիւնը, Հերովդէսի զինուորներուն կողմէ Մանուկ — Արքային հետապնդումը , եւն. :

Այս սովորութիւնները կամաց կամաց սկսած են անհետանալ մեծ քաղաքներուն մէջ, ուր արդէն մուտք գործած է եւրոպական «Ծնունդի Ծառ»ը :

---

ԵԳԻՊՏՈՍԻ Հանրապետութեան Նախագահ Նասր երկուշաբթի Փոր — Սայիտի մէջ ճառ մը խօսեցաւ՝ անգլեւֆրանսական ուժերուն վրայ տարուած «յաղթանակ»ին տարեդարձին առթիւ: Նախագահ Նասր Երկուշաբթի Փորթ-Սայիտի մարտիրոսներու յուշարձանին, որ պիտի բարձրանայ նոյն քաղաքին մէջ :

---

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (84)

# ԿԱՅԾԵՐ

## ԻԶ.

## Ի՞ՆՉ Է ՊԱՐՍԻԿԸ

Քրիստոնեան ստիպուած էր ինքը խօսել իր գործի մասին, մի այնպիսի դատարանում, որի օրէնքները բոլորովին անծանօթ էին նրան: Այս դէպքում եւս նա զրկւում էր իր իրաւունքը պաշտպանելուց եւ հետեւանքը լինում էր գործը տարուելը :

Ես չեմ ուզում մանրամասնաբար գրել, թէ որպէս խորամանկ չարախօսը սահմանափակում էր իսլամը չդաւանող ազգերի իրաւունքները եւ զրկում էր նրանց քաղաքական եւ նիւթական բաւականութիւնից, միայն այն կ'ասեմ, թէ որպիսի որոգայթներ էր լարում նա ուրիշ ազգութիւններից որսալ դէպի մահմետականութիւնը : Աղջիկներ, տղաներ գողանալ, յափշտակել նրան, եւ բռնութեամբ մահմետականութիւն ընդունել տալ, — դա ամենօրեայ եւ սովորական գործ էր : Բայց կային եւ այլ հնարներ, որոնք գրաւում էին քրիստոնեայի հաճութիւնը թողնել իր կրօնքը: Մահմետականութիւն ընդունող քրիստոնեան, բացի նրանից, որ բաւականին օժանդակութիւն էր ստանում իր նոր հաւատակիցներից, բացի նրանից, որ նա գրաւում էր նրանց յարգանքը, եւ վրէժխնդիր էր լինում իր հին կրօնակիցներից, եթէ ունէր մէկի հետ ոխ կամ թշնամութիւն, այլ եւ, նա տէր էր լինում բոլոր՝ թէ շարժական եւ թէ անշարժ ժառանգութեանը, որ պատկանում էր նրա ազգակիցներին: Այլ խօսքով, որ եւ իցէ գերդաստանի անդամներից մէկը, մահմետականութիւն ընդունելով, իրաւունք էր ստանում տիրել բոլոր կայքերին, ինչ որ պատկանում էր նոյն գերդաստանին: Մի այսպիսի արտօնութիւնը կարող էր գրաւել շատ անբարեխիղճ քրիստոնեաների շահասիրութիւնը, մանաւանդ երբ նրանք ընտանեկան անբաւականութիւններ ունէին միմեանց հետ : Եւ օրինակներ պատահում էին ոչ սակաւ :

Բացի յիշեալ աշխարհային արտօնութիւններից, որ ստանում էր նոր մահմետականութիւն ընդունող քրիստոնեան, նա օրէնքով վայելում էր մի աւելի մեծ արտօնութիւն միւս աշխարհում . — Նրա որդիքը մինչեւ եօթն սերունդ երկնքի դատաստանի առջեւ ազատ էին մնում ամենայն պատասխանատուութիւնից իրանց մեղքերի մասին. որպիսի եւ յանցանք գո՛րծած լինէին նրանք, նրանցից հարցափորձ չէր լինելու ...:

Քրիստոնեաների կրօնական արարողութիւնները իրանց կատակի եւ ծաղրածութեան առարկայ դարձնելը մահմետականների գլխաւոր զուարճութիւններից մէկն էր: Քիչ չէր պատահում, երբ խաները հարսանիք ունէին, կամ իրանց տօների ժամանակ, ուրիշ շատ կատակերգութեանց թւում, բերել էին տալիս եւ Հայոց քահանաներ իրանց եկեղեցական ըսպասով, ստիպում էին պատարագ մատուցանել, կամ այլ ծէսեր կատարել : Ես երբեք չեմ կարող մոռանալ, երբ այսպիսի հանդէսներից մէկի մէջ, խանը հրամայեց քահանային սաղաւարտը դնել իր շան գլխին շուրջառը գցել նրա վրայ, եւ ստիպեց տէրտէրին իր բուրվառով խնկարկել շանը : Տէրտէրը ի հարկէ չկատարեց հրամանը: Ողորմելի քահանային շան հետ միասին գցեցին մի տոպրակի մէջ, բերանը կապեցին եւ սկսեցին բազմութեան առջեւ փայտով ծեծել: Քահանայի հառաչանքը, շան կնձկնձոցը, միախառնուելով միմեանց, դարձեալ զուարճութիւն էին պատճառում անգութ բարբարոսներին :

Մահմետականները չունէին զօրանոցներ: Հայոց վանքերը եւ եկեղեցիները միշտ ունեցել են եւ ունէին օթեւաններ, պատերազմների ժամանակ նրանք դառնում էին մահմետական զինուորների բընակարաններ. իսկ սուրբ տաճարը, որովհետեւ աւելի ընդարձակ էր, գործ էին դնում որպէս ախոռ ձիանների համար : Իհարկէ, միեւնոյն ժամանակ կողոպտում էին ինչ որ գտնւում էր տաճարի մէջ: Շատ անգամ եւս վանքերը եւ եկեղեցիները ծառայեցնում էին որպէս ոչխարների ձմերանոցներ: Ի՞նչ հայ կարող էր ընդդիմանալ, ո՞վ կարող էր մի խօսք ասել, նրա լեզուն իսկոյն կը կտրէին :

Քանդուած վանքերը, եկեղեցիները կրկին նորոգելու կամ կարկտելու իրաւունք չկար : Շատ անգամ պատահում էր, տաճարի կտուրը ծակւում էր, կամ ճեղքւում էր. ձիւնը, անձրեւը ցած էր թափւում: Որմնադիր հրաւիրել անկարելի էր: Վարդապետները, քահանաները, եթէ միջոց էին գտնում, շինում էին գաղտնի, այն եւս գիշերով: Ծանր էր մի այսպիսի յանցանքը, եթէ յայտնուէր նա. պատիժը վերջանում էր ամենասարսափելի կերպով: Նոր վանքեր կամ եկեղեցիներ շինելու թոյլտուութիւն չկար. այդ կարող էր յաջողուել այն ժամանակ միայն, երբ մի մեծ գումարով քրիստոնեաները կը գնէին այս եւ այն իշխանի հաճութիւնը: :

ՐԱՖՖԻ

(Շար.)

